Պրոլետարնե՛ր բոլոր երկրների, միացե՛ք:

ՀԿԿ Կենտկոմի
պրոպագանդայի և
ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

ՕԳՈՍՏՈՍ 15 1961





Տիեզերագնաց ԳԵՐՄԱՆ ՍՏԵՊԱՆՈՎԻՉ ՏԻՏՈՎ



# ԻՆՉՊԵՍ ԱՆՑԿԱՑՆԵԼ ԶՐՈՒՅՑ «ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՆ ԱՇԽԱՏՈՒՄ ԵՎ ՊԱՅՔԱՐՈՒՄ Է ԺՈՂՈՎՐԴԻ ԲԱՐՕՐՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ» ԹԵՄԱՅՈՎ

*«Ամեն ինչ մարդու համար, հանուն մարդու բարօրության»։ Այս է հռչակում Սովետական Միության Կոմունիստական պարտիան իր նոր Ծրագրի նախագծում։ Զրույցի սկզբում ագիտատորը ունկնդիրներին մանրակրկիտ բացատրում է, որ Սովետական Միության Կոմունիստական պարտիան բացի ժողովրդի շահերից, ուրիշ շահեր չունի։ Նրա բարձրագույն նպատակն է՝ կառուցել կոմունիստական հասարակարգ, որը, ինչպես ասված է Ծրագրում, համապատասխանում է ամբողջ համաշխարհային սոցիալիստական սիստեմի շահերին, միջազգային պրոլետարիատի, բովանդակ մարդկության շահերին։*

*Սովետական Միության Կոմունիստական պարտիայի նոր Ծրագրի նախագծում հանգա-*

մանորեն պարզաբանվում է, որ այժմ կան բոլոր հնարավորությունները ամբողջ բնակչության՝ բանվորների, գյուղացիների, ինտելիգենցիայի բարեկեցության արագ բարձրացման համար։

Կոմունիստական պարտիան խնդիր է դընում Սովետական Միությունում ապահովել ամենաբարձր կենսամակարդակ՝ կապիտալիզմի ամեն մի երկրի համեմատությամբ։ Չէ՞ որ սովետական հասարակության զարգացման օրենքն է ժողովրդի բարեկեցության անընդհատ աճը՝ սոցիալիստական արտադրության զարգացման և աշխատանքի արտադրողականության բարձրացման հիման վրա։

«Եթե կապիտալիզմի պայմաններում,— ասում է ընկ. Ն. Ս. Խրուշչովը,— արտադրության աճը տանում է դեպի մի բուռ շահագործողների հարստացում և ուղեկցվում է աշխատավոր մասսաների հարաբերական ու բացարձակ աղքատացումով, ապա սոցիալիզմի ժամանակ արտադրությունը զարգանում է ամբողջ հասարակության շահերի օգտին, հասարակության բոլոր անդամների նյութական և կուլտուրական հարաճուն պահանջմունքները բավարարելու նպատակով և արտադրության աճը տանում է դեպի ամբողջ






ժողովրդի բարեկեցության անշեղ վերելք»։

Խոսելով այն մասին, որ կոմունիստական հասարակարգի կառուցումը դարձել է սովետական ժողովրդի անմիջական գործնական խնդիրը, ագիտատորը ունկնդիրների ուշադրությունը սրում է այն հանգամանքի վրա, որ սոցիալիզմի աստիճանական վերաճումը կոմունիզմի՝ օբյեկտիվ օրինաչափություն է, որը նախապատրաստված է սովետական սոցիալիստական հասարակարգի ամբողջ նախընթաց զարգացումով։ Ունկնդիրը հստակ պատկերացում պետք է ունենա, որ մեր երկրում կոմունիզմի կառուցման խնդիրների լուծումը իրագործվում է հաջորդական էտապներով։ Առաջիկա տասնամյակում, որն ընդգրկելու է 1961—1970 թվականները, Սովետական Միությունը, ստեղծելով կոմունիզմի նյութատեխնիկական բազան, բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ կգերազանցի ԱՄՆ-ին. նշանակալի չափով կբարձրանա աշխատավորների նյութական բարեկեցությունը և կուլտուր-տեխնիկական մակարդակը, բոլորի համար կապահովվի նյութական լիություն. բոլոր կոլտնտեսություններն ու սովխոզները կդառնան բարձր արտադրողական և բարձր եկամտաբեր տնտեսություններ.

հիմնականում կբավարարվեն սովետական
մարդկանց բարեկարգ բնակարանների պա-
հանջները, կանհետանա ծանր ֆիզիկական
աշխատանքը. ՍՍՌՄ-ը կդառնա ամենակարճ
աշխատանքային օրվա երկիր։

Երկրորդ տասնամյակում, որն ընդգրկե-
լու է 1971—1980 թվականները, կստեղծվի
կոմունիզմի նյութատեխնիկական բազան,
ամբողջ բնակչության համար կապահովվի
նյութական և կուլտուրական բարիքների
առատություն, սովետական հասարակու-
թյունն ընդհուպ կմոտենա ըստ պահանջների
բաշխման սկզբունքի իրականացմանը. տե-
ղի կունենա աստիճանական անցում դեպի
մեկ միասնական համաժողովրդական սեփա-
կանություն։ Այսպիսով, ՍՍՌՄ-ում հիմնա-
կանում կկառուցվի կոմունիստական հասա-
րակարգ։ Կոմունիստական հասարակարգի
կառուցումը լրիվին կավարտվի հաջորդ ժա-
մանակաշրջանում։

«Կոմունիզմի հույակապ շենքը,— ասված է
Ծրագրի նախագծում,— կերտվում է սո-
վետական ժողովրդի՝ բանվոր դասակարգի,
գյուղացիության, ինտելիգենցիայի համառ
աշխատանքով»։

Ինչպես ասվեց, առաջիկա քսան տարում
ամբողջ աշխարհում ամենաբարձր կենսա-



մակարդակը կունենա Սովետական Միու-
թյունը։ Մեր երկրում այդ բարձր կենսամա-
կարդակը կիրագործվի աշխատավորների
վարձատրությունը բարձրացնելու, մանրա-
ծախ գներն իջեցնելու, հարկերը վերացնելու
միջոցով։ Միաժամանակ կընդլայնվեն հան-
րային այն ֆոնդերը, որոնք բնակչությանը
բաշխվում են ձրիաբար (կրթություն, բու-
ժում, կենսաթոշակային ապահովություն,
մանկական հիմնարկներում երեխաներին
պահելը, անցումը կոմունալ ծառայություն-
ներից անվճար օգտվելուն և այլն)։

Նույն ժամանակամիջոցում, այսինքն քսան
տարում, ՍՍՌՄ-ի ազգային եկամուտը կա-
ճի հինգ անգամ, իսկ բնակչության մեկ
շնչին ընկնող ռեալ եկամուտները՝ ավելի
քան երեք ու կես անգամ։ Մոտակա տասը
տարում մեր երկրի ազգային եկամուտը կա-
ճի երկուսուկես անգամ։

Այս միտքը գրույցի ընթացքում ավելի
տպավորիչ դարձնելու նպատակով ագիտա-
տորը փաստեր է բերում այն մասին, թե
ինչպես ԱՄՆ-ում շահագործող դասակար-
գերը յուրացնում են ազգային եկամտի կե-
սից ավելին, մինչդեռ նրանք կազմում են
երկրի ամբողջ բնակչության մոտավորա-
պես մեկ տասներորդը միայն։ ՍՍՌՄ-ում

աշխատավորները իրենց անձնական նյու-
թական ու կուլտուրական պահանջմունքնե-
րի բավարարման համար ստանում են ազ-
գային եկամտի մոտ երեք քառորդը: Ազգա-
յին եկամտի մնացած մասը, որը նույնպես
պատկանում է աշխատավորներին, հատ-
կացվում է սոցիալիստական արտադրու-
թյան ընդլայնմանը և հասարակական մյուս
կարիքներին:

Այնուհետև ագիտատորը ունկնդիրներին
պարզաբանում է ժողովրդի նյութական բա-
րեկեցության բարձրացման բնագավառում
պարտիայի խնդիրները: Առաջիկա տասը
տարվա ընթացքում բանվորների և ծառա-
յողների ռեալ եկամուտները (հաշվի առնե-
լով հանրային ֆոնդերը), մեկ աշխատողին
ընկնող միջին հաշվով, կավելանան գրեթե
երկու անգամ, իսկ 20 տարում՝ մոտավո-
րապես երեք-երեքուկես անգամ: Համե-
մատաբար պակաս վարձատրություն ստա-
ցող բանվորների և ծառայողների ռեալ եկա-
մուտները մոտակա տասնամյակում կհասց-
վեն այնպիսի մակարդակի, որ երկրում չեն
մնա բանվորների ու ծառայողների ցածր
վարձատրվող կատեգորիաներ: Նվազագույն
աշխատավարձ ստացող բանվորների ու ծա-
ռայողների ռեալ եկամուտները այդ ժամա-





նակամիջոցում, հաշվի առնելով հանրային
ֆոնդերը, կաճեն մոտավորապես երեք ան-
գամ: Մոտակա տասնամյակում մեկ աշխա-
տողի հաշվով ավելի քան երկու անգամ,
իսկ 20 տարվա ընթացքում ավելի քան չորս
անգամ կբարձրանան կոլտնտեսականների
ռեալ եկամուտները: Նույն ժամանակաշրջա-
նում զգալիորեն կբարձրանա ինտելիգեն-
ցիայի աշխատավարձը:

Զրույցի այդ մասում ագիտատորը խոսում
է նաև այն մասին, որ բնակչության եկա-
մուտների աճին համապատասխան ձեռք
կբերվի ժողովրդական սպառման ընդհանուր
մակարդակի արագ վերելք: Ամբողջ բնակ-
չությունը հնարավորություն կստանա լիովի
բավարարելու իր պահանջները բարձրորակ
ու բազմազան սննդով և լայն սպառման
բարձրորակ ապրանքներով:

«Երկրորդ տասնամյակում,— ասված է
Ծրագրի նախագծում,— նյութական և կուլ-
տուրական բարիքների առատություն ձեռք
կբերվի ամբողջ բնակչության համար, նյու-
թական նախադրյալներ կստեղծվեն հաջորդ
ժամանակաշրջանում ըստ պահանջների
բաշխման կոմունիստական սկզբունքին
անցնելն ավարտելու համար»:

Ինչպես հայտնի է, բնակարանային պրոբ-

լեմը ամենակենսական հարցերից մեկն է։ Մարդիկ դարեր շարունակ երազել են հարմարավետ բնակարաններ ունենալու մասին։ Կոմունիստական պարտիան վիթխարի աշխատանք է կատարում, որպեսզի արագ կերպով վերացվի բնակարանների պակասը։ Պարտիայի Ծրագրի նախագծում խնդիր է դրված, որ երկրորդ տասնամյակի վերջում յուրաքանչյուր ընտանիք, ներառյալ նորապսակների ընտանիքները, ունենան առողջապահության և կուլտուրական կենցաղի պահանջներին համապատասխանող բարեկարգ բնակարան։ Գյուղացիական հին տիպի տները հիմնականում կփոխարինվեն նոր, ժամանակակից տներով, կամ այնտեղ, որտեղ հնարավոր է, կվերակառուցվեն՝ կատարելով անհրաժեշտ բարեկարգում։ Երկրորդ տասնամյակի ընթացքում բնակարանի օգտագործումը հետզհետե անվճար կդառնա բոլոր քաղաքացիների համար։

Առաջիկայում մեր երկրում կկատարվեն բարեկարգման մեծ աշխատանքներ։ Կոմունալ շինարարություններ կկատարվեն մեր երկրի բոլոր քաղաքներում և բանվորական ավաններում։ Երկրորդ տասնամյակում բնակչությունը ձրիաբար կօգտվի կոմունալ տրանսպորտից, տրամվայից, ավտոբուսից,



տրոլեյբուսից, մետրոյից։ Երկրորդ տասնամյակի վերջում ձրի կդառնան նաև կոմունալ ծառայությունները՝ ջրից, գազից, ջեռուցումից օգտվելը։

Խոսելով մեր երկրում բնակարանային պրոբլեմի լուծման մասին, ագիտատորը ունկնդիրներին պետք է պարզաբանի, որ կապիտալիստական երկրներում աշխատավորները տառապում են բնակարանային ծանր պայմաններում։ Օրինակ, ԱՄՆ-ում, հենց ամերիկյան պաշտոնական տվյալներով 15 միլիոն մարդ ապրում է հետնախորշերում, 13 միլիոն տներ (բոլոր տների ընդհանուր թվի մեկ քառորդը) չեն համապատասխանում բնակելի տներին ներկայացվող պայմաններին, քաղաքների յոթ միլիոն տներ խարխուլ լինելու հետևանքով բնակության համար պիտանի չեն։

Պարտիայի Ծրագրի նախագծում մեծ կարևորություն է տրվում աշխատաժամանակի կրճատմանը և աշխատանքի պայմանների հետագա բարելավմանը։ Առաջիկա տասը տարում կիրագործվի անցում վեցժամյա աշխատանքային օրվա՝ շաբաթական մեկ հանգստյան օրով, կամ 34—36 ժամյա աշխատանքային շաբաթի՝ երկու հանգստյան օրով, իսկ ստորերկրյա աշխատանքներում և

վնասակար արտադրություններում՝ հինգժամյա աշխատանքային օրվա, կամ 30-ժամյա հնգօրյա աշխատանքային շաբաթի։

Երկրորդ տասնամյակում արտադրողականության համապատասխան աճի բազայի վրա կսկսվի անցում է՛լ ավելի կրճատ աշխատանքային շաբաթի։

«...Սովետական Միությունը,— ասված է Ծրագրի նախագծում,— կդառնա աշխարհում ամենակարճ և միևնույն ժամանակ ամենաարտադրողական ու առավել բարձր վարձատրվող աշխատանքային օրվա երկիր»։

Ագիտատորը, խոսելով այն մասին, որ մեր երկրում ամեն ինչ արվում է աշխատավորների կյանքի պայմանները բարելավելու համար, նա միաժամանակ փաստեր է բերում, թե ինչպես կապիտալիստական երկրներում գնալով անտանելի է դառնում աշխատավորների վիճակը։ Օրինակ, ԱՄՆ-ում լայնորեն տարածված է աղքատությունը։ Արհմիութենական «Լեյբորս էկոնոմիկ Ռեյու» ամսագիրը հաղորդել է, որ 1960 թվականի կեսերին ԱՄՆ-ում 7,5 միլիոն ամերիկյան քաղաքացի իր գոյությունը պահպանել է ողորմությամբ։ Այդ նույն ամսագիրը հաղորդել է, որ ամերիկացիների 20 տոկո-



սից ավելին, այսինքն ավելի քան 40 միլիոն մարդ, միջոցներ չունի ապրուստի անհրաժեշտ մինիմումը բավարարելու համար։ Այս 40 միլիոնը, ընդգծում է ամսագիրը, «ապրում է կամ աղքատության եզրին, կամ աղքատության մեջ»։

Եթե 1940 թվականին ԱՄՆ-ում հարկ էին վճարում 7,5 միլիոն մարդ, ապա 1955 թըվականին նրանց թիվը հասնում էր մոտ 58 միլիոնի։

Ջրույցն ավելի հետաքրքիր դարձնելու նպատակով ագիտատորը պարզաբանում է պարտիայի Ծրագրի նախագծի այն մասը, որը վերաբերում է ժողովրդի առողջության և կյանքի տևողության երկարացման նկատմամբ պարտիայի հոգատարությանը։ Սոցիալիստական պետությունը միակ պետությունն է, որն իր վրա է վերցնում ամբողջ բնակչության առողջության պահպանման հոգատարությունը։ Պարտիայի նոր Ծրագրի նախագծով նախատեսվում է իրագործել լայն միջոցառումներ հիվանդությունները վճռականորեն կրճատելու, մասսայական վարակիչ հիվանդությունները վերացնելու, կյանքի տևողությունն է՛լ ավելի երկարացնելու համար։ Ջրի բուժսպասարկման հետ միասին հիվանդները ձրիաբար կօգտվեն

սանատորիաներից, դեղորայքից, հատուկ ուշադրություն կդարձվի մոր և մանկան առողջության պահպանման՝ հիմնարկների՝ ծննդատների, կոնսուլտացիաների, մանկական սանատորիաների ու հիվանդանոցների ցանցը ծավալելու վրա։

Ագիտատորը, իր զրույցի այդ մասը նվիրելով սովետական ժողովրդի առողջության պահպանման համար պարտիայի հոգատարությանը, միաժամանակ ունկնդիրներին կոնկրետ փաստերով բացահայտում է կապիտալիստական երկրներում դեպի աշխատավոր մարդու առողջության ու կյանքի նկատմամբ գոյություն ունեցող վայրենի կամայականությունը։ Բոլոր կապիտալիստական երկրներում բժշկական օգնության համար հիվանդը պարտավոր է մեծ գումարներ վճարել։ Ամերիկյան «Յունայթեդ Սթեյթըս Նյուս էնդ Ուորլդ ռիպորտ»— հանդեսը հաղորդել է, որ ԱՄՆ-ում բժշկական սպասարկման արժեքը «ծանր բեռ է դառնում միջակ ընտանիքի համար»։ Օրինակ, նույն հանդեսի տվյալներով, ստամոքսի խոցի վիրահատումն արժե 1264,5 դոլլար։ Հետևաբար միջին որակի բանվորը պետք է մի քանի ամիս ձրիաբար աշխատի, որպեսզի



կարողանա իր հիվանդ ստամոքսը վիրահատության տալ։

Զրույցի վերջում ագիտատորը ունկնդիրներին հանգամանորեն պարզաբանում է այն վիթխարի խնդիրները, որ պարտիան նախատեսում է կատարել ընտանիքի կենցաղային պայմանները բարելավելու, երեխաների և անաշխատունակների խնամքը հասարակության հաշվին իրագործելու կապակցությամբ։

Կենցաղում լրիվ վերացվելու են կնոջ անհավասար դրության մնացորդները, ստեղծվելու են սոցիալ-կենցաղային բոլոր պայմանները երջանիկ մայրությունը զուգորդելու հասարակական աշխատանքին ու հասարակական գործունեությանը, գիտության, արվեստի բնագավառներին կանանց ավելի ու ավելի ակտիվ և ստեղծագործական մասնակցության հետ։ Կանանց կտրվեն համեմատաբար ավելի թեթև և միևնույն ժամանակ բավարար չափով վարձատրվող աշխատանքներ։ Կավելանա հղիության արձակուրդների տևողությունը։ Տնային տնտեսության մեջ կհեշտացվի և կկրճատվի կնոջ աշխատանքը, արմատապես կբարելավվի հասարակական սննդի ցանցը, որը 10—15 տարվա ընթացքում կկարողանա գերակշռող

տեղ գրավել տնային սննդի համեմատությամբ։

Երկրորդ տասնամյակում կսկսվի անցում ձեռնարկություններում ու հիմնարկներում և արտադրության մեջ զբաղված կոլտնտեսականների հասարակական ձրի սննդի (ճաշերի) մատակարարման։

Քսանամյակի ընթացքում պետությունը, արհմիությունները և կոլտնտեսությունները աստիճանաբար իրենց վրա կվերցնեն այն բոլոր քաղաքացիների նյութական ապահովությունը, որոնք կորցրել են աշխատունակությունը տարիքի կամ հաշմանդամության հետևանքով։ Հիվանդության և աշխատունակությունը ժամանակավորապես կորցնելու նպաստներ, ծերության կենսաթոշակներ կստանան նաև կոլտնտեսականները։

«Ամբողջ աշխարհի առջև,— ասված է պարտիայի նոր Ծրագրի նախագծում,— Սովետական պետությունը կցուցադրի մարդու նյութական և կուլտուրական աճող պահանջների իսկապես լրիվ ու համապարփակ բավարարման օրինակ։

Վ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ



## ԱՆԹԵՐԻ ԿԱՏԱՐԵՆՔ ՍՏԱՆՁՆԱԾ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Վերջերս իր աշխատանքներն ավարտեց ՀԿՊ Կենտկոմի 9-րդ պլենումը, որը օրակարգի առաջին հարցում լսեց «Էջմիածնի, Թալինի, Կամոյի և Գորիսի պարտշրջկոմների զեկուցումները՝ ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումի որոշումների և ՍՄԿՊ XXII համագումարի պատվին ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքի մասին»։

Էջմիածնի շրջանի կոլտնտեսային և սովխոզային աշխատավորները, պարտիական կազմակերպությունների գլխավորությամբ, կենսագործելով ՍՄԿՊ Հունվարյան պլենումի որոշումները, զգալի հաջողություններ են ձեռք բերել գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու ուղղությամբ։ Այդ մասին խոսեց պարտշրջկոմի առաջին քարտուղար ընկ. Գ. Մարտիրոսյանը։ Շրջանում պակասել են անասունների անկումները։ Անցյալ տարվա նույն ժամա-

նակաշրջանի համեմատությամբ որոշ չափով ավելացել է կաթի և ձվի վաճառքը պետությանը, իսկ առանձին կոլտնտեսություններ կատարել են նաև մսի ու բրդի արտադրությունն ավելացնելու առաջադրանքը։ Լավ է խաղողագործության, պտղաբուծության և բանջարաբուծության վիճակը։ Սակայն կան և լուրջ թերություններ։ Անբավարար են օգտագործվում եղած հնարավորությունները՝ մասնավորապես խոտաբույսերի, եգիպտացորենի, երեքնուկի ցանքատարածություններն ընդարձակելու, անասուններն անհրաժեշտ կերի պաշարով ապահովելու ուղղությամբ։

Թալինի պարտշրջկոմի առաջին քարտուղար ընկ. Ա. Համբարձումյանը, խոսելով հանրային անասունների գլխաքանակի ավելացման գործում ձեռք բերած որոշ հաջողությունների մասին, միաժամանակ կանգ է առնում այն լուրջ թերությունների վրա, որոնք գոյություն ունեն շրջանի կոլտնտեսային և սովխոզային աշխատանքների բնագավառում։ Կլիմայական անբարենպաստ պայմանների հետևանքով այս տարի զգալիորեն կրճատվում է հացահատիկի և անասնակերի արտադրությունը, որը բացասաբար է անդրադառնում անասնապահա-





կան մթերքների ավելացման վրա։ Այնուհետև նա խոսում է շրջանում խաղողագործությունը և պտղաբուծությունը զարգացնելու հեռանկարների և իռիգացիոն աշխատանքներն ուժեղացնելու մասին։

Կամոյի պարտշրջկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Ծաղիկյանը պատմեց, որ շրջանի կոլտնտեսություններում ու սովխոզներում, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, զգալիորեն ավելացել են անասունների գլխաքանակը, բրդի և ձվի արտադրությունը։ Սակայն դրությունը անմխիթարական է անասնաբուծական մթերքների ավելացման ուղղությամբ։ Շոշափելի չափով իջել է մսի, կաթի արտադրությունը։ Պակասել է խոզերի ու թռչունների գլխաքանակը։ Չի կատարվել պետությանը միս և կաթ վաճառելու կիսամյա պլանը։ Այնուհետև նա ասաց, որ չնայած այդ բոլորին, մենք ունենք բոլոր հնարավորությունները թերությունները վերացնելու, մոբիլիզացնելու աշխատավորության ողջ ուժերը՝ վերցրած պարտավորությունները կատարելու համար։

Գորիսի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Ք. Պետրոսյանը իր զեկուցման մեջ նշեց, որ չնայած ստեղծված բնական ծանր պայման-





ներին, շրջանի պարտիական կազմակերպությունները, կոլտնտեսային և սովխոզային աշխատավորությունը անում են ամեն բան, որպեսզի կատարեն վերցրած սոցիալիստական պարտավորությունները։ Շատ կոլտնտեսություններում խոշոր և մանր եղջերավոր անասունների անկումը կրճատվել է երկու, խոզերինը՝ երեք անգամ։ Կատարվել են մսի ու կաթի վաճառքի, բրդի արտադրության ու վաճառքի պարտավորությունները։ Չնայած կերի կուտակման ուղղությամբ եղած դժվարություններին, շրջանի պարտիական կազմակերպություններն ու կոլտնտեսությունները կոնկրետ միջոցներ են ձեռնարկել անասունները կերով ապահովելու համար։

Առաջին հարցի շուրջը ելույթ ունեցան 11 հոգի։

ՀԿՊ Կենտկոմի քարտուղար ընկ. Մ. Մելքոնյանը իր ելույթում ասաց, որ այս տարվա անբարենպաստ պայմանները ոչ թե պետք է թուլացնեն, այլ էլ ավելի ուժեղացնեն գյուղական պարտիական կազմակերպությունների և կոլտնտեսային աշխատավորության ուժերը՝ ստանձնած պարտավորությունները հաջողությամբ կատարելու, պարտիայի



XXII համագումարը պատվով դիմավորելու համար։

«Առաջին կիսամյակի շինարարության պլանների կատարման արդյունքների և 1961 թվականի պետական պլանների կատարումն ապահովելու խնդիրների մասին» օրակարգի երկրորդ հարցի մասին զեկուցեց ՀԿՊ Կենտկոմի քարտուղար ընկ. Գ. Հարությունյանը։

Ներկայումս ռեսպուբլիկայի աշխատավորները, ասաց զեկուցողը, բարձր ոգևորությամբ են լցված յոթնամյա պլանով նախատեսված սոցիալիստական շինարարության հոյակապ խնդիրները անթերի կատարելու համար։ Այս յոթնամյակում ժողովրդական տնտեսության զարգացման կապիտալ ներդրումները 2,5 անգամ գերազանցում են նախորդ յոթ տարվա կապիտալ ներդրումները։ Այդ գումարից 840 միլիոն ռուբլի, կամ 63 տոկոսը, կօգտագործվի արտադրական օբյեկտների կառուցման համար. դա հնարավորություն կտեղծի շահագործման հանձնել ավելի քան 130 նոր արդյունաբերական ձեռնարկություն։ Շինարարության բարձր տեմպերն ապահովելու համար ռեսպուբլիկայում լուրջ աշխատանքներ են կատարվել շինանյութերի արտադրության ա-

վելացման և շինարարական ինդուստրիայի զարգացման ուղղությամբ։

Այնուհետև ընկ. Հարությունյանը նշեց, որ ռեսպուբլիկայի շինարարական կազմակերպությունները յոթնամյակի անցած երկու տարիների ընթացքում շատ բան են արել արդյունաբերական նոր խոշոր ձեռնարկությունների, բնակելի շենքերի, դպրոցների, հիվանդանոցների, կոմունալ-կենցաղային օբյեկտների կառուցման և շահագործման հանձնելու գործում։ Արդեն գործող ձեռնարկությունների շարքն են մտել Լուսավանի ներտաշ հաստոցների, Երևանի հաստոցաշինական, էլեկտրաապարատների, Լենինականի հղկող հաստոցների, էլեկտրատեխնիկական և էլեկտրաշարժիչների, Կիրովականի «Ավտոմատիկա» և ճշգրիտ հաստոցների, Գորիսի միկրոէլեկտրաշարժիչների գործարանները, Աթարբեկյանի հիդրոէլեկտրակայանը։

Շարք են մտել ջրատնտեսական մի շարք խոշոր օբյեկտներ, ինչպես, օրինակ, Արզնի-Շամիրամ ջրանցքի առաջին հերթը, Թալինի, Կոտայքի ոռոգման սիստեմները, Դվինի ջրանցքի և մի շարք խոշոր պոմպակայաններ, որոնց շնորհիվ ռեսպուբլիկայի ոռոգելի հողատարածությունները ավելացել են



15,6 հազար հեկտարով։ Շահագործման են
հանձնվել 396 հազար քառակուսի մետր
բնակելի տարածություն, 55 հանրակրթական
ու գիշերօթիկ դպրոց և այլ օբյեկտներ։
Սակայն, չնայած այս ամենին, ասաց ընկ.
Հարությունյանը, կապիտալ շինարարությու-
նը դեռ լուրջ կերպով ետ է մնում։
1960 թվականի պետական կապիտալ շի-
նարարության պլանը կատարվել է 96,4 տո-
կոսով, այդ թվում շինարարական-մոնտա-
ժային աշխատանքները՝ 96,1 տոկոսով։
Անցյալ տարի հատկապես անբավարար է
կատարվել բնակարանային շինարարության
պլանը։
Այս տարվա առաջին կիսամյակում կա-
պիտալ շինարարության պլանը կատարվել է
ընդամենը 82 տոկոսով։ Իսկ արդյունաբե-
րության այնպիսի առաջատար ճյուղերի,
ինչպիսիք են քիմիական, մեքենաշինական,
շինանյութերի արդյունաբերությունը, գու-
նավոր մետալուրգիան, կիսամյա պլանը
կատարվել է 70—80 տոկոսով։
Շինարարության այդպիսի ետ մնալը
ընկ. Հարությունյանը բացատրում է շինա-
րարական կազմակերպությունների, առաջին
հերթին Շինարարության մինիստրության,
Ժողտնտխորհի շինարարության վարչության,

«Հայհիդրոէներգոշին»-ի անբավարար աշ-
խատանքի, որոնք ռեսպուբլիկայի հիմնա-
կան շինարարական կազմակերպություններն
են։ Շինարարական կազմակերպություններ[ի]
ետ մնալու մյուս հիմնական պատճառը
բանվորական ուժի պակասն է և եղածի
դեռևս վատ օգտագործումը։
Վերջում ընկ. Հարությունյանը նշում է, որ
անհրաժեշտ է հաղթահարել եղած թերու-
թյունները, արմատական բեկում մտցնել
շինարարության բնագավառում և պատվով
դիմավորել ՍՄԿՊ XXII համագումարը։
Օրակարգի երկրորդ հարցի շուրջը ելույթ
ունեցան 14 հոգի։

Պլենումում ընդարձակ ճառով հանդես ե-
կավ Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի
առաջին քարտուղար ընկ. Յա. Ն. Զարոբյա-
նը։ Նա ասաց, որ վերջերս Հայաստանում
գտնված ժամանակ ընկ. Ն. Ս. Խրուշչովը,
բարձր գնահատական տալով հայ ժողովրդի
աշխատանքային հաջողություններին, միա-
ժամանակ բազմաթիվ արժեքավոր և օգտա-
կար խորհուրդներ ու ցուցումներ տվեց, օգ-
նեց լուծելու ռեսպուբլիկայի տնտեսության
համար մի շարք կարևոր հարցեր։ Դա առա-
ջին հերթին Ախուրյանի ջրամբարի շինարա-
րությունն է, Արփայի ջրերը դեպի Սևանա-



լիճը ուղղելը և այլ հարցեր։
Խոսելով գյուղատնտեսության բնագավա-
ռում կատարվող աշխատանքների մասին,
ընկ. Զարոբյանը նշեց, որ մտնելով ՍՄԿՊ
XXII համագումարի պատվին ծավալված
սոցիալիստական մրցության մեջ, ռեսպուբ-
լիկայի գյուղատնտեսության աշխատավոր-
ներն անձնվեր պայքար են մղում ՍՄԿՊ
Կենտկոմի Հունվարյան պլենումի որոշում-
ները կատարելու համար։ 1960 թվականի
առաջին կիսամյակի համեմատությամբ ռես-
պուբլիկայում ավելացել է կաթի, բրդի, ձվի
արտադրությունը, կրճատվել են անասուննե-
րի անկումները։ Չնայած կլիմայական ան-
նպաստ պայմաններին, առանձին շրջան-
ներ, ինչպես, օրինակ, Վեդու, Ղուկասյանի,
Ամասիայի կոլտնտեսականները հաջողու-
թյամբ են կատարում ստանձնած սոցիալիս-
տական պարտավորությունները։ Սակայն
այնպիսի շրջաններ, ինչպես Արտաշատի,
Բասարգեչարի, որտեղ երաշտ չի եղել, կաթի
հանձնման պլանը կատարել են միայն կիսով
չափ։
Անասնաբուծության զարգացման և մթե-
րատվության բարձրացման գործում ներկա-
յումս ամենակարևորը կերի կուտակումն է,
որը պետք է կատարվի ուժերի մաքսիմալ

լարումով, քրտնաջան ու անձնվեր աշխատանքով։

Խոսելով շինարարության հարցերի մասին, ընկ. Զարոբյանը խնդիր դրեց հաղթահարել շինարարության ետ մնալը, որ Շինարարության մինիստրությունը, Ժողտնտխորհի շինարարության վարչությունը և «Հայհիդրոէներգոշինը» պետք է արմատապես բարելավեն իրենց աշխատանքները, ծավալեն շինարարության ինդուստրիան, կառույցներն ապահովեն անհրաժեշտ բանվորական ուժով ու որակյալ կադրերով։

Առայժմ դեռ սուր է մնում բնակարանային հարցը։ Մենք պետք է հասնենք այն բանին, որ անպայման կատարվեն բնակարանային շինարարության պլանները, կարգ ու կանոն հաստատենք բնակելի տարածության բաշխման գործում։ Վերջերս ՀԿՊ Կենտկոմի բյուրոն հատուկ որոշում ընդունեց այդ հարցի առթիվ։

Այնուհետև ընկ. Զարոբյանը խոսում է կադրերի ընտրության և ճիշտ տեղաբաշխման մասին։ Անհրաժեշտ է կադրերը դաստիարակել ազնվության, ճշմարտացիության և հանձնարարված գործի կատարման պատասխանատվության ոգով։ Կարևոր հարցերից է, ասաց նա, հակահասարակական



երևույթների դեմ մղվող պայքարը։ Հարկավոր է պարտիական խիստ վերահսկողություն սահմանել վարչական օրգանների գործունեության նկատմամբ։

Վերջում ընկ. Յա. Ն. Զարոբյանը ասաց, որ Հայաստանի Կոմունիստական պարտիան ինչպես երբեք համախմբված է ՍՄԿՊ լենինյան Կենտկոմի շուրջը։ Ուրեմն եկեք համերաշխ ու կուռ շարքերով աշխատենք այնպես, որպեսզի լենինյան մեծ պարտիայի XXII համագումարը դիմավորենք նորանոր բերկրալի հաջողություններով՝ տնտեսական ու կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում։

Քննարկված հարցերի առթիվ պլենումն ընդունեց համապատասխան որոշումներ։

## ԱՎԵԼԻ ՇԱՏ ԿԵՐ ԿՈՒՏԱԿԵՆՔ ԱՆԱՍՈՒՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

*Սովետական Միության Կոմունիստական պարտիայի նոր և փառապանծ Ծրագիրը հրապարակվելուց հետո մեր անծայրածիր երկրում հուժկու պայքար ծավալվեց գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու համար։ Այդ պայքարից ետ չմնացին նաև մեր ռեսպուբլիկայի աշխատավորները։ Նրանք դեռևս տարվա սկզբին մրցությամբ պարտավորություն էին ստանձնել կոլտնտեսություններում և սովխոզներում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը հասցնել 417 հազար 700 գլխի, այդ թվում կովերինը՝ 137 հազար 900 գլխի, խոզերինը՝ 105 հազար գլխի, ոչխարներինն ու այծերինը՝ մեկ միլիոն 443 հազար գլխի, թռչուններինը՝ մեկ միլիոն 254 հազար 700 գլխի։ Այսպիսով, 1961 թվականին, 1960 թվականի համեմատությամբ, խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը կավելանա մոտ 3 տոկոսով, այդ թվում կովերինը*



*8 տոկոսով, ոչխարներինն ու այծերինը՝ 7,5 տոկոսով և հավերինը՝ 49,5 տոկոսով։*

*Անասնագլխաքանակի այդպիսի աճը հնարավորություն կստեղծի ապահովելու անասնաբուծական մթերքների արտադրությունը հետևյալ չափով. միս՝ 51,4 հազար տոննա կենդանի քաշով, կաթ՝ 212,6 հազար տոննա, բուրդ՝ 3.390 տոննա, ձու՝ 56 միլիոն հատ։*

*Այս ցուցանիշներին հասնելու ձգտումով են համակված ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների ու սովխոզների աշխատավորները։ Նրանք ընթացիկ տարում հաջողությամբ կազմակերպեցին և անցկացրին անասունների ձմեռումը, նախորդ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ 4,5—5 անգամ նվազեց անասունների անկումը և հուլիսի 1-ի դրությամբ 8 տոկոսով ավելացավ կովերի գլխաքանակը, 5,6 տոկոսով՝ կաթի համախառն արտադրությունը։ Այժմ հաջողությամբ ընթանում է անասունների արոտային շրջանը։*

*Այս բոլորը շատ ուրախալի է։ Բայց անհրաժեշտ է լրջությամբ մտահոգվել, որ նախնական հաջողություններն ամրապնդվեն և առաջին հերթին անասուններն ապահովվեն*

կերով: Ահա այս հարցն է, որ պետք է մտահոգի գյուղատնտեսության մեր բոլոր աշխատողներին: Հիշենք նաև այն, որ ինչպես անցյալ տարվա աշնանը, այնպես էլ այս տարվա գարնանը անբարենպաստ կլիմայական պայմանների պատճառով տուժեցին բնական խոտհարքները, արոտավայրերը և ցանովի խոտերի ցանքերը. հետևաբար այժմ ստեղծված է բավականին լարված վիճակ անհրաժեշտ քանակությամբ անասնակերեր կուտակելու գործում: Հաշվի առնելով, որ այժմ գտնվում ենք անասունների համար կերեր կուտակելու ամենալուրջ և պատասխանատու շրջանում, անհրաժեշտ է վճռական միջոցներ ձեռնարկել կերի նոր աղբյուրներ գտնելու և դրանք արդյունավետ օգտագործելու համար:

Անասնագլխաքանակի պահպանման և նրանից ստացվող մթերատվությունն ապահովելու նպատակով ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում և սովխոզներում նախատեսված է այս տարի կուտակել 654 հազար տոննա խոտ, 355 հազար տոննա ծը-ղոտ, պատրաստել 788 հազար տոննա սիլոս, ստանալ ավելի քան 156 հազար տոննա արմատապալարապտուղներ և այլն: Սակայն բնական և ցանովի խոտհարքների



ներկա վիճակը բավարար երաշխիք չի տալիս այնտեղից հավաքելու ցանկացած բերքը: Ինչպես հայտնի է, խոտի ծածկոցը բավականին ցածր է, դրա համար էլ խոտհունձը պետք է կատարել խնամքով: Այն տարածություններում, որտեղ բույսերի բարձրությունը չի ապահովում մեքենայական բերքահավաքին, հարկավոր է թե բնական և թե ցանովի խոտերը հավաքել գերանդիով, իսկ առանձին դեպքերում՝ նույնիսկ մանգաղով:

Անցյալ տարիներում կորնգանի ցանքատարածություններում հունձ են կատարել մեկ անգամ: Դա անտնտեսվարություն է: Այս տարի կորնգանի ցանքատարածություններում, որտեղ դրանք ապահովված են ամառային ոռոգելի ջրով, պետք է երկու անգամ հունձ կատարել: Այսպիսի տարածություններ կան Մարտունու, Բասարգեչարի, Շիրակի, Նալբանդի, Լոռու, Սիսիանի և շատ ուրիշ շրջանների մոտ: Անհրաժեշտ է ցանքի խոտհարքներում կատարված առաջին հարից հետո անմիջապես ջրել և այդ տարածություններում խստիվ արգելել անասունների մուտքը, որով ապահովված կլինի 2-րդ հարը: Այս ճանապարհով կարելի է մոտ

25 հազար հեկտար կորնգանի տարածության վրա կատարել խոտի 2-րդ հար։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզները ունեն մոտ 12 հազար հեկտար առվույտի ցանքատարածություն, որը ամառային ու աշնանային ամիսներին ապահովված է ոռոգելի ջրով։ Գաղտնիք չէ, որ առվույտի շատ տարածություններում վատ խնամքի և ջրի ձգձգման պատճառով կատարվում է միայն 2—3 հար, մինչդեռ, առաջավոր կոլտնտեսությունները այդ նույն տարածությունում կատարում են 4 և շատ անգամ 5 հար։ Որպեսզի առվույտի ցանքերում 4—5 հար կատարվի, պետք է հնձած խոտը դաշտից դուրս բերել և որից անմիջապես հետո կազմակերպել ցանքի հետագա խնամքը՝ ջրել ըստ պահանջի, լրացուցիչ սննդանյութեր տալ, պայքարել վնասատուների դեմ և այլն։

Անասունների կերի խոշոր մասը կազմում է սիլոսը, որը ընթացիկ տարում հիմնականում պետք է կատարվի եգիպտացորենի ցանքատարածություններից ստացվող մասսայից։ Գարնանը կոլտնտեսությունները և սովխոզները ցանել են 25 հազար հեկտար եգիպտացորեն, որից հատիկի համար առանձնացված է 5 հազար հեկտար։ Եթե մնացած տարածության ամեն մի հեկտարից միջինը 250 ցենտներ բերք ստացվի, ապա ռեսպուբլիկան կունենա 500 հազար տոննա սիլոս։

Բայց, դժբախտաբար, բոլոր տեղերում չէ, որ եգիպտացորենի ցանքատարածությունները մշակվում են խնամքով։ Շատ շրջաններում (Բասարգեչար, Կիրովական, Հրազդան և այլն) եգիպտացորենի ցանքատարածությունները ժամանակին չքաղհանելու, չփխրեցնելու պատճառով դրանք գտնվում են վատ վիճակում, և բույսերի աճն ընթանում է խիստ դանդաղ։

Արարատյան դաշտավայրում, ինչպես նաև ցածրադիր մյուս շրջաններում ավարտվելու վրա է հացահատիկի հունձը, որին պետք է հաջորդի եգիպտացորենի ամառային ցանքը։ Այդ նպատակով հնձված տարածություններից խնամքով պետք է դուրս բերել ծղոտը և տեղափոխել կոլտնտեսությունների ու սովխոզների անասնապահական շենքերի մոտ, խնամքով մանրացնել ու պահեստավորել։ Հնձին զուգընթաց կատարել եգիպտացորենի ցանք մոտ 6 հազար հեկտարի վրա։ Եգիպտացորենի ամառային ցանքի լավ խնամքի դեպքում յուրաքանչյուր հեկտարից կստացվի 150 ցենտներ

կանաչ զանգված, որից կոլտնտեսություններն ու սովխոզները լրացուցիչ կստանան 75—80 հազար տոննա սիլոս։

Այս գյուղատնտեսական տարում ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզներն զգալի չափով ընդարձակել են արմատապտուղների ցանքատարածությունները, որոնք հասել են ավելի քան 5 հազար հեկտարի։ Լավ խնամքի դեպքում հնարավոր է ստանալ մեծ քանակությամբ հյութալի կեր։ Սակայն մի շարք շրջաններում՝ Ղափանի, Ազիզբեկովի և ուրիշ շրջաններում, արմատապտուղների ցանքատարածությունները գտնվում են անմխիթար վիճակում։

Հյութալի կեր կարելի է պատրաստել նաև արմատապտուղների թփերից, որոնք պետք է խնամքով հավաքել, մեծ մասը սիլոսացնել, իսկ մնացած մասը չորացնել՝ ձմեռային շրջանում անասուններին կերակրելու համար։ Այս ճանապարհով հնարավոր է կուտակել ավելի քան 60 հազար տոննա կեր։

Սիլոսի պաշարներն ավելացնելու նպատակով անհրաժեշտ է օգտագործել նաև ծխախոտի ցողունները, իհարկե ծխախոտի բերքը հավաքելուց հետո։ Ծխախոտի ցողուններից պատրաստված սիլոսը լավ-



գույն կեր է բոլոր տեսակի անասունների, հատկապես ոչխարների համար։

Անասունների կերաբաժնում մեծ տեղ է գրավում հացահատիկային կուլտուրաների ծղոտը, որի տարեկան քանակը կազմում է 325—350 հազար տոննա։ Անհրաժեշտ է ծղոտը դաշտերից խնամքով հավաքել ժամանակին ու տեղափոխել և մանրացնել։ Նախնական հաշիվները ցույց են տալիս, որ նախորդ տարվանից կոլտնտեսություններում և սովխոզներում կուտակվել է մոտ 60—65 հազար տոննա ծղոտ, որը ներկայումս գտնվում է անխնամ վիճակում և ենթակա է փչացման։ Պահանջվում է անմիջապես կազմակերպել այդ ծղոտի մանրացման ու պահեստավորման աշխատանքները։

Այս ամենին զուգընթաց հատուկ ուշադրություն պետք է դարձնել կերը խնամքով ծախսելու վրա։

Մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության բնագավառի աշխատողները կանեն ամեն ինչ, որպեսզի հանրային հոտը ապահովեն կերով և նոր հաջողություններով դիմավորեն Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարը։

Ռ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ
Հայկական ՍՍՌ գյուղատնտեսության
մինիստրի տեղակալ

# ՆՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՎ ԴԵՊԻ ՍՄԿՊ XXII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

## (ԹՎԵՐ ԵՎ ՓԱՍՏԵՐ)

*Յոթնամյակի երրորդ տարվա առաջին կիսամյակը նոր հաջողություններ բերեց մեր մեծ երկրին։ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1961 թվականի առաջին կիսամյակի պետական պլանի կատարման արդյունքները վառ կերպով ցույց են տալիս այն ,արժանավայել գործերը, որոնցով սովետական ժողովուրդը դիմավորում է իր հարազատ Կոմունիստական պարտիայի XXII համագումարը։ Ահա թվեր և փաստեր այդ մասին։*

*Այս տարվա առաջին կիսամյակում, անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, ՍՍՌՄ արդյունաբերական արտադրության ծավալը ավելացել է 8,4 տոկոսով, իսկ միջին օրական արտադրությունը՝ 9 տոկոսով, ՍՍՌՄ արդյունաբերական արտադրանքի թողարկման կիսամյա պլանը կատարված է 102 տոկոսով։*

*Անցած վեց ամսում, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, ավելի է արտադրված 2,1 միլիոն տոննա չուգուն, 2,8 միլիոն տոննա պողպատ, 2 միլիոն տոննա գլանվածք, 293 հազար տոննա պողպատե խողովակներ։*

*Անցյալ տարվա համեմատությամբ այս տարվա առաջին կիսամյակում ավելի է արտադրվել. երկաթի հանքաքար՝ 5,9 միլիոն տոննա, նավթ՝ 9,1 միլիոն տոննա, գազ՝ 6,4 միլիարդ խորանարդ մետր, էլեկտրաէներգիա՝ 13,2 միլիարդ կիլովատ-ժամ, հանքային պարարտանյութեր՝ 823 հազար տոննա։*

*Այս տարվա առաջին կիսամյակում, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, երկիրն ավելի է ստացել մետաղահատ հաստոցներ՝ 5,3 հազար հատ, քիմիական սարքավորում՝ 14 միլիոն ռուբլու, ցեմենտ՝ 2,6 միլիոն տոննա, մեծ քանակությամբ հավաքովի երկաթբետոնե կոնստրուկցիաներ ու դետալներ և այլն։*

*Մեծ են հաջողությունները ժողովրդական սպառման ապրանքների արտադրության բնագավառում։ Այս տարվա 6 ամսում, անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, 10 միլիոն զույգով ավելացել է կաշվե կոշկեղենի արտադրությունը, սպիտակեղեն և վերնազգեստ-տրիկոտաժինը՝ 11 միլիոն հատով, կահույքինը՝ ավելի քան 83 միլիոն ռուբլու, հեռուստացույցներինը՝ 137 հազար հատով, սառնարաններինը՝ 69 հազար հատով և այլն։*

Նույն ժամանակամիջոցում անսարատ կաթնամթերքների արտադրությունն ավելացել է 346 հազար տոննայով, պահածոներինը՝ 200 միլիոն տուփով և այլն։

Այս տարվա առաջին կիսամյակում արդյունաբերության շատ ճյուղեր արտադրական պլանը կատարել են 105-ից մինչև 131 տոկոսով և պլանից դուրս երկրին տվել վիթխարի քանակությամբ արդյունաբերական արտադրանք։

Յոթնամյակի անցած երկուսուկես տարվա ընթացքում ՍՍՌՄ-ում նախատեսված պլանից 15 միլիարդ ռուբլու ավելի արդյունաբերական արտադրանք է արտադրվել։ Արտադրանքի այդ քանակը համադրելի գներով այնքան է, որքան արտադրվել է ամբողջ հինգերորդ հնգամյակի ընթացքում։

Անցած կիսամյակում սոցիալիստական արդյունաբերությունը երկրին տվել 25 միլիոն տոննա չուգուն, 34,9 միլիոն տոննա պողպատ, 27,2 միլիոն տոննա գլանվածք, 3,1 միլիոն տոննա պողպատե խողովակներ, 57,3 միլիոն տոննա երկաթի հանքաքար։

Նույն ժամանակամիջոցում երկիրն ստացել է 79,7 միլիոն տոննա նավթ, 28,8 միլիարդ խորանարդ



մետր գազ, 225 միլիոն տոննա ածուխ, այդ թվում 55,5 միլիոն տոննա կոքսացած ածուխ։

Այս տարվա առաջին կիսամյակում գյուղատնտեսությունն ստացավ 7,6 միլիոն տոննա հանքային պարարտանյութեր, 451 միլիոն ռուբլու գյուղատնտեսական մեքենաներ, 36,5 հազար հացահատիկային կոմբայններ, 46,6 հազար տրակտորային հնձիչներ։

Նույն ժամանակամիջոցում արտադրվել է 132 հազար տրակտոր (ֆիզիկական միավոր), 72 հազար տրակտորային գութան, 71,6 հազար տրակտորային շարքացան, 46,2 տրակտորային կուլտիվատոր, 4,8 հազար հատիկազատիչ մեքենաներ և շատ այլ գյուղատնտեսական մեքենաներ։

Վեց ամսում երկիրն ստացել է 2,8 միլիոն տոննա ծծմբաթթու, 121 հազար տոննա արհեստական և սինթետիկ թել, 1 միլիոն 258 հազար տոննա թուղթ։

Այդ նույն ժամանակամիջոցում ՍՍՌՄ-ում արտադրվել են 81,3 հազար մետաղահատ հաստոցներ, 112 հազար տոննա մետալուրգիական սարքավորում, 52,9 հազար տոննա նավթասարքավորում, 118 միլիոն ռուբլու քիմիական սարքավորում, 10 հազար գործվածքային հաստոցներ։

Մեր երկիրը հարստացավ փոխադրական նոր միջոցներով։ Առաջին կիսամյակում արտադրվել է 721 մագիստրալային ջերմաքարշ, 262 մագիստրալային էլեկտրաքարշ, 339 տրոլեյբուս, 275 հազար ավտոմոբիլ և 9,2 միլիոն ավտոդող։

Մեծ հաջողություններ են ձեռք բերվել շինանյութերի արտադրության բնագավառում։ Կիսամյակում արտադրվել է 24,5 միլիոն տոննա ցեմենտ, 18 միլիոն խորանարդ մետր հավաքովի երկաթբետոնե ու բետոնե կոնստրուկցիաներ և դետալներ, 1,7 միլիարդ շիֆեր-պայմանական սալիկ, 72 միլիոն քառակուսի մետր պատուհանի ապակի։

Բարձր զարգացման է հասել մեր երկրի թեթև արդյունաբերությունը։ Միայն առաջին կիսամյակում արտադրվել է 2,4 միլիարդ քառակուսի մետր բամբակե գործվածքներ, 224 միլիոն քառակուսի մետր բրդե գործվածքներ, 341 միլիոն քառակուսի մետր մետաքսե գործվածքներ և շատ այլ գործվածքեղեն, սպիտակեղեն ու կոշկեղեն։

Անընդհատ ավելանում է նաև սննդամթերքների արտադրությունը։ Անցած կիսամյակում երկրում արտադրվել է 338 հազար տոննա յուղ, (առանց կոլտնտեսությունների արտադրության և բնակչության տնային արտադրության), 4,5 միլիոն տոննա



անարատ կաթնամթերքներ՝ կաթի հաշվով, 1,4 միլիարդ տուփ պահածոներ (ժողտնտխորհի և տեղական Սովետների արդյունաբերության գծով) և այլն։

Արդյունաբերության բնագավառում ձեռք բերված խոշոր հաջողություններից մեկն էլ այն է, որ անցած կիսամյակում ժողովրդական տնտեսության մեջ արմատավորվել են 1,3 միլիոնից ավելի գյուտեր և ռացիոնալիզատորական առաջարկություններ, որոնք տարեկան տալիս են ավելի քան 700 միլիոն ռուբլու տնտեսում։

Արդյունաբերության մեջ այս տարվա առաջին կիսամյակում, անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 3,5 տոկոսով։

Նույն ժամանակամիջոցում սև մետալուրգիայի արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 5 տոկոսով, գունավոր մետալուրգիայինը՝ 10, ածխարդյունաբերությանը՝ 4, նավթի արդյունաբերությանը՝ 12, մեքենաշինությանն ու մետաղամշակմանը՝ 14 և այլն։

Առաջին կիսամյակում մեծ չափերով իջել է արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքը։ Անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ ժողովրդական տնտեսության մեջ մոտ 5 տոկոսով ավելի շահույթ է ստացվել։

# Թ Ե Մ Ա Ն Ե Ր

## ՍՄԿՊ ԾՐԱԳՐԻ ՆԱԽԱԳԾԻ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ ԴԱՍԱԽՈՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ, ԶԵԿՈՒՅՑՈՒՄՆԵՐԻ ԵՎ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ

1. Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագիրը կոմունիստական հասարակության կառուցման համար մղվող պայքարի մեծ ծրագիրն է։

2. Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագրի նախագիծը մեր դարաշրջանի քաղաքական ու տեսական մարքս-լենինյան մեծ փաստաթուղթն է։

3. Կապիտալիզմից կոմունիզմին անցնելը մարդկության զարգացման ուղին է։

4. Հոկտեմբերյան ռևոլյուցիայի և ՍՍՌՄ-ում սոցիալիզմի հաղթանակի համաշխարհային պատմական նշանակությունը։

5. Սոցիալիզմը միլիոնավոր մասսաների կենդանի ստեղծագործությունն է։

6. Սոցիալիզմի համաշխարհային սիստեմը։

7. Համաշխարհային սոցիալիստական սիստեմի ժողովուրդների միասնությունն ու համագործակցությունը։



8. Համաշխարհային կապիտալիզմի ճգնաժամը։

9. ԱՄՆ-ի մոնոպոլիստական բուրժուազիան միջազգային ռեակցիայի գլխավոր հենարանն է։

10. Համաշխարհային իմպերիալիստական սիստեմի խոր և սուր հակասությունները։

11. Բանվոր դասակարգի միջազգային ռևոլյուցիոն շարժումը։

12. Կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ձևերը տարբեր երկրներում։

13. Դեմոկրատիայի համար մղվող պայքարը սոցիալիզմի համար մղվող պայքարի բաղկացուցիչ մասն է։

14. Սոցիալիզմը ճնշված ժողովուրդների ազատագրության դարագլխի սկիզբն է։

15. Կապիտալիզմը ժողովուրդների տառապանքների ուղին է։

16. Սոցիալիզմը ժողովուրդների ազատության և երջանկության ուղին է։

17. Կոմունիստական պարտիայի պայքարը բուրժուական և ռեֆորմիստական գաղափարախոսության դեմ։

18. Պրոլետարիատի ռևոլյուցիոն աշխարհայացքը՝ մարքսիզմ-լենինիզմի հաղթանակը։ Բուրժուական գաղափարախոսության խոր ճգնաժամը։

19. Խաղաղ գոյակցությունը և ընդհանուր խաղաղության համար մղվող պայքարը։

20. Արդիականության հիմնական հարցը պատերազմի և խաղաղության հարցն է։

21. Պատերազմները վերացնելը, երկրագնդի վրա հավիտենական խաղաղություն հաստատելը կոմունիզմի պատմական միսիան է։

22. Խաղաղ գոյակցությունը մարդկային հասարակության զարգացման օբյեկտիվ անհրաժեշտությունն է։

23. Սովետական Միության Կոմունիստական պարտիայի խնդիրները կոմունիստական հասարակարգի կառուցման բնագավառում։

24. Կոմունիզմը ամբողջ մարդկության պայծառ ապագան է։

25. Երկու տասնամյակի ընթացքում ՍՍՌՄ-ում հիմնականում կկառուցվի կոմունիստական հասարակարգ։

26. Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը պարտիայի և սովետական ժողովրդի հիմնական տնտեսական խնդիրն է։

27. Արդյունաբերության զարգացումը և նրա դերը կոմունիզմի արտադրողական ուժերի ստեղծման գործում։

28. Ծաղկուն, համակողմանիորեն զարգացած և բարձր մթերատու գյուղատնտեսության ստեղծման ուղիները։

29. Հասարակական հարաբերությունների զարգացումը գյուղում։

30. Սովետական Միությունը կապահովի կապիտալիզմի ամեն մի երկրի համեմատությամբ ամենաբարձր կենսամակարդակը։



31. Պարտիայի խնդիրները պետական շինարարության և սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացման բնագավառում։

32. Սոցիալիստական պետականության զարգացման գլխավոր ուղղությունը կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում։

33. Սովետները և պետական կառավարման դեմոկրատական սկզբունքների զարգացումը։

34. Հասարակական կազմակերպությունների դերի հետագա բարձրացումը։

35. Սովետական Միության Զինված Ուժերի և պաշտպանության ամրապնդումը։

36. Ժողովուրդների լենինյան բարեկամությունը Սովետական պետության ուժի և հզորության աղբյուրն է։

37. Կոմունիստական պարտիայի պայքարը սոցիալիստական ազգերի էկոնոմիկայի և կուլտուրայի հետագա զարգացման համար։

38. Պարտիայի գաղափարական աշխատանքի հարցերը նոր Ծրագրի նախագծում։

39. Պարտիայի խնդիրները կոմունիստական գիտակցականության դաստիարակության բնագավառում։

40. Աշխատանքային դաստիարակությունը գաղափարական աշխատանքի վճռական օղակն է։

41. Կոմունիստական բարոյականության բարձր

հատկություններով օժտված նոր Մարդու դաստիարակությունը։

42. Պրոլետարական ինտերնացիոնալիզմի և սոցիալիստական հայրենասիրության զարգացումը։

43. Անհատի համակողմանի, ներդաշնակ զարգացումը։

44. Կապիտալիզմի մնացուկների հաղթահարումը մարդկանց գիտակցության և վարքի մեջ։

45. Բուրժուական գաղափարախոսության մերկացումը։

46. Սոցիալիզմի և կոմունիզմի մեծագույն առավելություններն իր դարն ապրած կապիտալիստական սիստեմի նկատմամբ։

47. Պարտիայի հիմնական խնդիրները ժողովրդական կրթության բնագավառում։

48. Աշխարհում ամենաառաջավոր՝ սովետական գիտության ու տեխնիկայի զարգացման խնդիրները։

49. Պարտիայի խնդիրները կուլտուրական շինարարության, գրականության և արվեստի բնագավառում։

50. Կոմունիզմի կառուցումը ՍՍՌՄ-ում և սոցիալիստական երկրների համագործակցությունը։

51. ՍՍՌ-ում կոմունիզմի կառուցումը սովետական ժողովրդի ինտերնացիոնալ մեծ խնդիրն է։

52. Կոմունիստական պարտիան կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում։



53. Կոմունիստական պարտիայի դերի և նշանակության հետագա աճը։

54. Կոմունիստական պարտիան սովետական ժողովրդի ավանգարդն է, ամբողջ ժողովրդի պարտիան։

55. ՍՄԿՊ-ն ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմի պարտիա է։

56. Պարտիական կյանքի լենինյան նորմաների և կոլեկտիվ ղեկավարության սկզբունքի անթերի պահպանումը պարտիական կյանքի օրենքն է։

57. Կոմունիստական պարտիայի գաղափարական և կազմակերպական անխախտ համագործակցությունը նրա անհաղթելիության կարևորագույն աղբյուրն է, կոմունիստական շինարարության մեծ խնդիրների հաջող լուծման կարևոր պայմանը։

58. Պարտիան գոյություն ունի ժողովրդի համար և նրան ծառայելու մեջ է տեսնում իր գործունեության իմաստը։

## Նշումների համար

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ

### ՄԵԹՈԴԱԿԱՆ ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ



### ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ



### ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԹԵՄԱՆԵՐ



### ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ



### ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ



---

**Խմբագրության հասցեն.** — *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78։*

## СОДЕРЖАНИЕ:






Խմբագիր Վ. Ա. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ



## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Գ. ՄԽԻԹԱՐՅԱՆ— Պրոլետարիատի դիկտատուրայի տեսության զարգացումը Վ. Ի. Լենինի կողմից, 71 էջ, գինը 7 կոպեկ։

Բ. ԵՄԵԼՅԱՆՈՎ— Խորհուրդներ կուլտուրայի համալսարանների կազմակերպիչներին և ունկնդիրներին, 218 էջ, գինը 40 կոպեկ։

Ա. ԹՈՎՄԱՍՅԱՆ— Բազմամյա խոտաբույսերի դիմացկունության բարձրացումը, 92 էջ, գինը 10 կոպեկ։

Լևոն ԵՂԻԱԶԱՐՅԱՆ— Անատոլ Ֆրանսը նովելիստ, 212 էջ, գինը 35 կոպեկ։

Отдел пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 15 1961 г.

ՎՖ 02240 Պատվեր 398 Տպաքանակ 8274

Հանձնված է արտադրության 30/VII 1961 թ.։
Ստորագրված է տպագրության 8/VIII 1961 թ.։

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության պոլիգրաֆարդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։

Գինը 8 կոպ.